ՏԱՐԵԳԼՈՒԽԻ ԱՌԹԻՒ Յառաջ լոյս չի տեսներ կիրակի օր ։

նով ։ Կը յուսան թէ ծերակոյտն ալ պիտի վաւերացնէ յառաջիկայ փետրուարին ։ Իտալիոյ պաշտօնական շրջանակները գոհ են որ ճեղք մը եւս կը փակուի, ամրապնդելով եւրոպական միութիւնը » ։

Պելժիոյ կառավարութիւնն ալ շատ գոհ մնաց վաւերացումէն ։

× Արեւմտեան Գերմանիոյ վարչապետը, Տոքթ. Ատընաուըր գգուշաւոր յայտարարութիւն մը հրատարակեց վաւերացումէն անմիջապէս ետք, առանց խոշոր բառեր գործածելու, ըսելով թէ վաւերացումը «նոր քայլ մըն է ի գործադրութիւն Փարիզի դաշնագիրներուն» ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵԳԻՊՏՈՍԻ զինուորական ատեանը Դեկտեմբեր 30ին տասը տարիէն ցկեանս բանտարկութեան դատապարտեց Իսլամ Եղբայրութեան 64 անդամներ ։ Ուրիշ 52 ամբաստանեալներ ալ դատապարտուեցան տասը տարի բանտարկութեան, յետաձգումով ։ Ուրիշ արտակարգ ատեան մը մէկէն մինչեւ եօթը տարի բանտարկութեան դատապարտեց 35 Եգիպտացիներ որոնք ամբաստանուած էին իբրեւ համայնավար ։

ԻՏԱԼԻՈՅ վարչապետը, Շելպա, Մ. Նահանգները պիտի այցելէ պաշտօնապէս, տեսակցելու համար Այզընհաուըրի հետ ։

ՌՈՒՄԲԵՐ պայթեցան Մարոքի Քազապլանքա քաղաքին մէջ ։ Ահաբեկչական արարքները յաճախադէպ կը դառնան ։

ԲՌՆԻ ԳԵՐՄԱՆԻԱ փոխադրուած հայրենատէր Ֆրանսացիները 15.000 ֆրանք հատուցում պիտի ստանան, համաձայն նոր հրամանագրի մը ։

ՈՂՈՂՈՒՄՆԵՐԸ մեծ վնասներ պատճառեցին Թէլ Ավիվի մէջ (Իսրայէլ) ։ Այլուր փոխադրուեցան 1500 բնակիչներ, մեծ մասով կիներ եւ մանուկներ ։

## « ՅԱՌԱՋ » Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

Նոր տարուան առթիւ շնորհակալութեամբ ստացանք հազար ֆրանք, հաւատարիմ բաժանորդէ մը (Յ. Յ. Ս.) ։



## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Ֆ. Կ. Խ.ի Պոմոնի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Տիկին Անուշ Քաքասեանի եւ Մխճեան ընտանիքներուն, իրենց սիրելի եղբօր եւ ազգականին ողբացեալ Սարգիս Մխճեանի դառնակսկիծ մահուան առթիւ եւ փոխան ծաղկեպսակի երկու հազար ֆրանք կը նուիրէ Այնճարի «Յառաջ» վարժարանին ։

ՆՈՒԷՐՆԵՐ.— Սէնթ Օպանէն (Պ. Ալփ) Տէր եւ Տիկին Յակոբ Զավուշեան իրենց աղջկան ամուսնութեան առթիւ կը նուիրեն հազար ֆր. «Յառաջ»ի բարգաւաճման, հազար ֆր. ալ Կապ. Խաչի օժանդակութեան կայանի նորոգման համար ։

## ԾԱԽՈՒ Է

Բնակարան մը 11 սենեակ, որ տարեկան 150.000 ֆրանք շահ կը բերէ ։ Ունի չորս առանձին սենեակ մուտքի դուռներով, 400 մեթր մշակելի հող ։ Առանձին հիւսնագործի արհեստանոց մը լրիւ մեքենական կազմածներով ։ Բնակարան արհեստանոց միասին կամ առանձին ։

Դիմել՝

35, Av. Lieutenant Fine, la Viste, Marseille

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ.— Բնիկ Կեսարացի Էօժէնի եւ Վիքթոր կը փնտռեն իրենց եղբայրը՝ Արթին Օզումուչեան, որ կորսուած է Իզմիրի մէջ 1922ին ։ Կը բնակէր թիւ 35 Տէյիրմէն փողոց ։ Տեղեկացնել Տիկին Էօժէնի Տապանեանի, 19 րիւ Մարսէլ Պինէ, Պուա Քոլոմպ (Սէն), Ֆրանս ։

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Արեւմտեան Եւրոպայի Կեդր. Կոմիտէն անփոփոխարար ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջաններու ընկերները, նշանակուած թուականներուն ։ Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը.—

7 Յունուար Ս. Էթիէն ։
8 Յունուար Ս. Շամոն ։
9. Յունուար Լիոն ։
10 Յունուար, Տէսին ։
12 Յունուար Վիէն ։
14 Յունուար Վալանս ։
15, 16, 17 Յունուար Մարսէյլ ։
18 Յունուար Կրընոպլ ։

## ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌ

ԵՒ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ՀԱՅԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Այս կիրակի ժամը ճիշդ 15ին, Ազգ. տան թատերասրահը, 32 րիւ տը Թրէվիզ ։

Կազմակերպուած Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի մասնաճիւղին կողմէ ։

Բոլոր աշակերտներու կողմէ պիտի ներկայացուի ԵՐԿՈՒ ԾԱՂՐԱՑԵՂՆԵՐԸ եւ ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԸ ։

Կը հրաւիրուին ծնողները եւ բարեկամները ։

Ս. ՊԱՏԱՐԱԳ ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Այս Շաբաթ, Յունուար 1, առտուան ժամը 10ին Ս. պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին ։

ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԱՐՄՆԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

## ՆՈՅԵՄԲԵՐ 22ԻՆ 1955

Ի ՅԻՇԱՏԱԿ

RENÈ GROUSSET ի

Ողբացեալ ակադեմականին հայ բարեկամները երեկոյ մը կազմակերպած են Յունուար 14ին, Միւզէ Կիմէի սրահին մէջ ։





Imp. Araxes - 46, Rue Richer. Paris (9e)

## ՈՒՐՖԱՅԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏՆԵՐՈՒ 39ՐԴ ԵՒ 35ՐԴ

ՏԱՐԵԴԱՐՁԵՐՈՒ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

Կազմակերպուած Փարիզի Ուրֆայի Հայ Բ. Միութեան կողմէ

Յունուար 2, Կիրակի ժամը 15էն 24

CERCLE MILITAIREի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

Բարձր հովանաւորութեամբ Dr. BERNARD LAFAY ի

Նախկին նախարար, Փարիզի քաղաքապետ

ՆԱԽԱԳԱՀ՝ Général d'Armée DUFIEUX

Խօսք կ'առնեն Պ. Շ. ՆԱՐԴՈՒՆԻ, Պ. ՎԱՐԴԱՆԵԱՆ, Յ. ՀԻՍԱՅԵԱՆ

աղդակ Ֆիզիքական եւ բարոյական այլասերման: Ալքոլամոլութիւնը կարեւոր պատճառներէն մէկն է ընկերային Ապահովութեան մեծ բացին: Ընդհ. Ժողովը կը հրաւիրէ Ընկերային Ապահովութեան վարչութիւնը իրենց միանալ, պայքարելու համար ալքոլամոլութեան չարիքներուն դէմ: Ընդհ. Ժողովը կը շնորհաւորէ կառավարութեան ձեռնարկները եւ կը խնդրէ շարունակել իր գործունէութիւնը, աւելի ազդու միջոցներ ձեռք առնելով:

× Սէնի նահանգային խորհուրդն ալ բանաձեւ մը քուէարկեց որ կ'ըսէ թէ ալքոլամոլութիւնը թիւ մէկ պատուհասը կը կազմէ, հետեւաբար անհրաժեշտ է պայքարիլ: Տեղեկագրի մը համաձայն, Սէնի շրջանին մէջ միայն մտային հիւանդութեանց համար ութ միլիառ 250 միլիոն ֆրանք սահմանուած էր 1954ին, իսկ այս տարի՝ 9 միլիառ 120 միլիոն:

## ՁԻՒՆ—ՁՄԵՌ

Նոր տարին սկսաւ սաստիկ ցուրտով մը: Կիրակի օր թեթեւ ձիւն մըն ալ տեղաց Փարիզի մէջ, իսկ աւելի առատ՝ լեռնային շրջաններուն մէջ: Մասնագէտներու կարծիքով ցուրտը պիտի շարունակուի տակաւին: Ձիւնը զգալի բարձրութեան մը հասած է Սէնթ Էթիէնի, Թարասքոնի եւ ուրիշ քաղաքներու մէջ: Սէնթ Էթիէն — Մարսէյլ գնդակախաղի մրցումը կէս ճամբան մնաց, որովհետեւ կարելի չէր որոշապէս տեսնել անցուդարձը:

Եւրոպայի միւս մասերուն մէջ ալ հետզհետէ կը սաստկանայ ցուրտը: Արեւելեան Գերմանիոյ երկաթուղիները ծածկուած են թանձր ձիւնով: Անգլիոյ մէջ եւս կը նեղուին արտակարգ ցուրտէն: Ձիւն կը տեղայ նաեւ Մ. Նահանգներուն մէջ:

Պոլսոյ վերջին թղթաբերէն կ'իմանանք թէ ձիւն — ձմեռը մեծ աւերներ կը գործէ Թուրքիոյ մէջ: Կամուրջ մը փլած է Էտիրնէի ճամբուն վրայ: Արնդհատ կը ձիւնէ Էրզրումի, Անգարայի, Պրուսայի եւ ուրիշ քաղաքներու մէջ:

«ՕՐ. ԿԱԹԸ», 18 տարեկան Ամերիկուհի մը, Փարիզ հասաւ Մ. Նահանգներէն, ճիշդ տարեդլուխին, վարչապետին յանձնելու համար հողագործներու կողմէ նուիրուած 48 աման կաթը: Փոխադարձաբար պիտի տանի 48 շիշ շամփայն, Մ. Նահանգներու 48 կառավարիչներուն համար:

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

### Ս. ԾՆՈՒՆԴԻ ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ

Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ, Փարիզ

ՓԱՐԻԶ.— Յունուար 5: Չորեքշաբթի, ճրագալոյց Ս. Ծննդեան, երեկոյեան ընկերգ ժամերգութեան ժամը 15·30ին, Պատարագ ժամը 17ին:

Յունուար 6 հինգշաբթի, Տօն Ս. Ծննդեան եւ Աստուածայայտնութեան, սկիզբ ժամերգութեան ժամը 8ին, Ս. պատարագ ժամը տասնին:

Կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ Սերովբէ Ծ. Վ. Մանուկեան: Յետ պատարագի Ջրօրհնէքի արարողութիւն:

Յունուար 7 Ուրբաթ, Բ. օր Ծննդեան, յիշատակ Մեռելոց, պատարագ ժամը 10ին::

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

5 Յունուար, Չորեքշաբթի, Ճրագալոյց Ս. Ծնունդի:

Երեկոյեան պատարագ ժամը 5:

6 Յունուար, Հինգշ. Ս. Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն Ս. Պատարագ երկսեռ խումբով:

ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ Պոմոնի Ս. Գր. Լուս. եկեղեցւոյ արարողութեանց:

Այս Չորեքշաբթի, ճրագալոյց, Սկիզբ. երեկոյեան ժամերգութեանց ի ժամ 3·30, Սուրբ պատարագ ի ժամ 4·30:

Այս Հինգշաբթի Ծնունդ, սկիզբ ժամերգութեանց ի ժամ 7, հանդիսաւոր Ս. պատարագ (Եկմալեան) ի ժամ 10:

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Պօղոս — Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այս Չորեքշաբթի, ճրագալոյցի երեկոյեան ժամերգութիւնը պիտի սկսի ժամը 6ին, Ս. պատարագը ժամը 7ին:

ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ.— Առնուվիլի Վարդայ Ս. Խաչ եկեղեցւոյս հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այս չորեքշաբթի երեկոյեան ժամը հինգին կը սկսի Գիրքերու ընթերցումը եւ վեցին Ս. պատարագ: Հետեւեալ օրը՝ հինգշաբթի Ծընունդի օրը սկիզբ ժամերգութեան ժամը 8ին եւ հանդիսաւոր Ս. պատարագ ժամը 10·30ին:

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Արեւմտեան Եւրոպայի Կեդր. Կոմիտէն սախպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջաններու ընկերները, նշանակուած թուականներուն: Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը.—

7 Յունուար Ս. Էթիէն:
8 Յունուար Ս. Շամոն:
9· Յունուար Լիոն:
10 Յունուար, Տէսին:
12 Յունուար Վիէն:
14 Յունուար Վալանս:
15, 16, 17 Յունուար Մարսէյլ:
18 Յունուար Կրընոպլ:

ՍՈՒԷԶԻ ՋՐԱՆՑՔԸ փակուած է մէկ շաբթուան համար: Ցունական քարխադատար նաւ մը զարնուելով հին կամուրջին, 150 թոն ծանրութեամբ մետաղեայ ձող մը ինկաւ նաւուն վրայ որ անշարժութեան դատապարտուեցաւ: Վնասը աւելի ծանր է քան պատերազմի ատեն արձակուած ռումբերուն գործած աւերը: Երեք հարիւր նաւեր Կարմիր Ծովուն երկու կողմերը, կը սպասեն ջրանցքին բացման: Արկածէն ազդուած են բոլոր նաւային եւ ապահովագրական ընկերութիւնները եւ աւելի քան երեսուն երկիրներու թղթատարական սպասարկութիւնները:



Imp. Araxes - 46, Rue Richer. Paris (9e)

Տէր եւ Տիկին Յակոբ Արէլեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ճարտարապետ Ժ. Սիսլեան եւ զաւակները (Պաղտատ), Տէր և Տիկ. Տթ. Ժ. Պօնօմ, Տէր եւ Տիկ. Սերոբ Խոլաքեան եւ զաւակները (Սան Փաւլօ), Այրի Տիկին Անթուան Խոլաքեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Տօքթ. Ֆռանսուա Խոլաքեան, Քոյր Ռօզ (Պէյրութ), Քոյր Ժէռմէն (Աղեքսանդրիա), Տէր եւ Տիկին Յովհաննէս Խոլաքեան եւ զաւակները (Պէյրութ), Տէր եւ Տիկին Քերոբէ Թիւթիւնճեան եւ զաւակները (Սան Փաւլօ), Տէր եւ Տիկին Անթուան Գարամանլեան եւ զաւակները (Պէյրութ), Տէր եւ Տիկին Նառւմ Թալաթինեան եւ զաւակները, (Աղեսանդրիա), Տէր եւ Տիկին Ֆերտինանտ Խոլաքեան, Տէր եւ Տիկ. Անռի Խոլաքեան, խոր ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, քրոջ, մեծ մօր, զոքանչին եւ ազգականին՝

ԱՐՑԻ ՏԻԿԻՆ ՋԱՐՈՒՀԻ ԽՈԼԱՔԵԱՆԻ

արկածահար մահը, որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր 25ին, Քաշանի մէջ:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այսօր երեքշաբթի առաւօտ ժամը 10·30ին Քաշանի Սէն Ժէռմէն եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Քաշանի գերեզմանատունը:

Հաւաքուիլ Սէն Ժէռմէնի եկեղեցին, 38 Ավընիւ Տիւմօթէլ:

Հաղորդակց.— 187 թիւ օթոպիւս, Փորթ տ'Օռլէանէն եւ մեթրօ Լինել տը Սօ, Առքէօյ Քաշան:

Կը խնդրուի փոխան ծաղկեպսակի նուէրներ ընել բարենպատակ հաստատութեանց:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այն նկատել:

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Եզնպատցի կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Քրիստափոր, Ռոստոմ, Մ. Եօթնեղբայրեան, Աղբիւր Սերոբ, Րաֆֆի, Վահան Խորէնի եւ Փոթորիկ խումբերը այս ուրբաթ եւ շաբաթ ժամը 20·30ին, Սօսիէթէ Սավանթ: Պարտաւորիչ ներկայութիւն:

# Ա Ռ Ա Ն Ց ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԵԱՆ

●

Ու ես կ'երթամ դէպի աղբիւրը լոյսին
Դ. ՎԱՐՈՒԺԱՆ

Սովորութիւն է ամէն տարեվերջի առթիւ հաշուեյարդարութեան նստիլ։ Գրի առնել, գրականութեան հաշւոյն, բոլոր գրական երեւոյթները։ Թուել բոլոր հրատարակութիւնները։ Բաղդատել նախորդ տարուան գրական գործերուն հետ, որակն ու համրանքը մատնանշել եւ նորագոյն յաջողութիւններու եւ ստեղծագործութեան մաղթանքն ընել ։

Տարին որ վերջացաւ, հայ գրականութեան համար մխիթարական կը թուի, բոլոր այն հրատարակութիւններով, որոնք հրապարակը ողողեցին 1954ի ընթացքին։ Երեւոյթը շատ յատկանշական է այն տեսակէտով, որ քանի կը պակսին ընթերցողները, քառակուսի համեմատութեամբ կ'աւելնան ու կը բազմանան հրատարակութիւնները, ամէն տեսակ։ Սպառում ոչ միայն նիւթի, այլեւ մանաւանդ, մտքի արտադրութեան ։

Մեր գրողները միշտ պատնէշին վրայ են։ Յաճախ կը լսենք ձայներ Արեւելքէն ու Արեւմուտքէն։ Արեւելքը այն երկրամասն է, ուր մեծ թիւով հայութիւն մը համախմբուած է։ Արեւմուտքը Ամերիկան է ։ Եթէ առաջինին մասին մեր թերթերը, ճամբորդները եւ այցելողները միշտ լաւատեսութեամբ արտայայտուած են, երկրորդին մասին մեզի հասած են ու կը հասնին ահազանգի մը արձագանգները ։

Հիմա այլեւս բերանները բացուած են։ Խորհրդաւորութիւն չկայ։ Մարդիկ ապաղան չա՛տ տխուր գոյներով կը ներկայացնեն։ Եւ իրաւունք ալ ունին։ Վէրքերը ծածկելու մէջ ոչ մէկ իմաստութիւն։ Ոչ մէկ հեռատեսութիւն։ Ընդհակառակն ։

Վերջին քանի մը շաբաթներու ընթացքին, մէկը միւսէն աւելի ողբերգական ձայներ հասան մեր ականջին։ Կարդացինք վտանգը դիմաւորող արտայայտութիւններ, մէկը միւսէն ծանր, ցաւալի եւ տխուր ։

Նիւ Եորքի մէջ տասնեւվեց տարիէ ի վեր լոյս կը տեսնէ «Նոր Գիր» եռամսեայ հանդէսը, նուիրուած գրականութեան եւ արուեստի։ Խմբագիրն է Բենիամին Նուրիկեան, որ հաւատքով, սիրով ու մեծ զոհողութիւններով, լոյս ընծայած է իր եռամսեան, որ մեր ալ եռամսեան էր ։

Իր վերջին միացեալ թիւին մէջ (թիւ 1, 2, 3), Մեր խմբագրին հետ խորագրով խօսակցութիւն մը ունի խմբագիրը։ Տեսակ մը համարատուութիւնն ոչ միայն թերթին, այլ եւ խմբագրին։ Եւ մենք որ եռամսեային գոյութիւնը ապահովուած կը կարծէինք, 180 հազարի հասնող ամերիկահայ գաղութին մէջ, տխրութեամբ եւ ցաւով կը կարդանք հետեւեալ խոստովանութիւնները։

— «Ինչ կը լռէ, բայց ես, իբրեւ սրտակից ընկեր, չեմ կրնար լռել այլեւս։ Եւ իր համեստութիւնն իսկ վիրաւորելու, արիւնելուահաւոր գնովն եւ որ հոս կ'արձանագրեմ այս տողերը։ Կը համարձակիմ գրել այս տողերը՝ Սփիւռքի մեր գրականութեան պատմութեան համար միայն — իբրեւ թարմ ու իրաւ մէկ վկայութիւնը ամերիկահայ խմբագրի մը կեանքին եւ գործին, գրական գետիններու վրայ անշուշտ ։

«Իրեն պէս՝ գրական տենդով բռնուած մէկ քանի ընկերներու հետ, մօտաւորապէս տասնըվեց տարի առաջ էր որ սկսաւ հրատարակել իր հանդէսը, ամբողջովին նուիրուած գրականութեան եւ արուեստի։ Մէկ երկու տարիէն՝ ընկերները — պարագաներուն ճնշումովը — հեռացան հրատարակչական պատասխանատուութենէ , իր ուսերուն վրայ ձգելով հանդէսին նիւթական հոգերն ալ, խմբագրական աշխատանքին հետ։

« Տարիներու ընթացքին՝ իր թերթին բաժանորդներուն թիւը նօսրացած է ահաւոր չափերով, մեծ մասով իբրեւ արդիւնք մահուան, որ հայերէն գիտցող սերունդին գլխուն զարկած է ամէնէն առաջ բնականաբար, եւ նորերը չեն եկած հիներուն տեղը լեցնել իբրեւ ընթերցող ։ Նիւթական բեռի ծանրացում մը սա, իր իսկ ուսերուն, բե՛ռ, զոր տարած է առանց գանգատի, իր սեփական համեստ միջոցներուն ապաւինած »։

... « Բայց կը զարմանայ, դառնօրէն կը զարմանայ թէ ինչո՞ւ այս հարուստ գաղութը որ միշտ ալ կը յիշէ իր աէրտէքրին, ժամկոչին ու աղքատին գանձանակը, պաղ աչքով կը նայի իր թերթին ու գիրքին վրայ , եւ կը ձգէ որ այդ թերթն ու այդ գիրքը իրենց թուփերուն վրայ չորնան կամաց կամաց .... »

Եւ ահաւասիկ տխուր խոստովանութիւնը — « Հանդէս մը — դուք հասկցէք Նոր Գիրը — որ տասնէ մը ի վեր իր վերջալոյսի օրերը կ'ապրի »։

Ահաւասիկ դարձեալ Ամերիկայէն, ուրիշ յուետես բայց եւ այնպէս իրատես ձայն մը, այս անգամ «Հայաստանի Կոչնակ»ի էջերէն, ստորագրուած փրոֆ. Գր. Ա. Ս.ի կողմէ (փրոֆ. Գրիգոր Ա. Սարաֆեան).

— « Ատեն մը պիտի գայ երբ ամերիկահայ եկեղեցիները պիտի չունենան արժանաւոր հոգեւորականներ, կրթական, բարեգործական ու կուսակցական ասպարէզներու մէջ պիտի պակսին անձնուէր ու կարող գործիչներ , մեր թերթերն ալ զուրկ պիտի մնան իմաստուն ու հաւասարակշռեալ մտքի տէր խմբագիրներէ, շընորհալի գրիչի ու ոճի ու ազնիւ խորհուրդներու տէր գրողներէ եւ աշխատակիցներէ։ («Հայաստանի Կոչնակ», Նոյ. 1954, թիւ 48)։

Աւելորդ կը գտնեմ որեւէ խորհրդածութիւն։ Պարագան եւ վկայութիւնները շատ պերճախօս են։ Կ'ուզեմ միայն աւելցնել ուրիշ տխուր փաստ մը, այս անգամ Ֆրանսայէն, Փարիզէն, ուր կ'ապրի արդէ մեր գրականութեան լաւագոյն արձակագիրներէն մէկը եւ որուն խոստովանութիւնը եւս մեկնութեան չի կարօտիր։

Խօսակցութեան մը ընթացքին, երբ կը հարցնէի, թէ ո՞ւր է արդեօք իր վերջին հրատարակութեան նպաստումէն.

— Ոչ , պատասխանեց , անվերապահ կերպով։ Գիրքերս հասած են արդէն 18ի, բայց եւ այնպէս ոչ մէկ անգամ սպառումը եղած է այսքան դժուար, դանդաղ։ Մտքէս չանցնիր նոր գիրք հրատարակել»։

Հիմա դառնանք դէպի Արեւելք։ Հէքեաթներու դասական հայրենիքը։ Հոն, ուր հոծ եւ ստեղծագործ գաղութ մը կ'ապրի, եւ որուն մասին միշտ գրական եւ լաւատես արտայայտութիւններ միայն լսած ենք։ Բոլոր անոնք որ Լիբանանէն եւ Սուրիայէն վերադարձած են, լուսաւոր բաներ պատմեցին։ Արդեօք երեւոյթները՞ն խաբուած են։ Գիտենք որ հոն մշակոյթի , կրթութեան ու դաստիարակութեան բազմաթիւ օճախներ կը գործեն ։ Ամէն գրատուն կամ հրատարակչական հիմնարկութիւն մէկը միւսին ետեւէն բազմաթիւ երկեր լոյս կ'ընծայէ։ Պատկերը շա՛տ մխիթարական կը գտնեն այնտեղ այցելողներն ու վերադարձողները ։ Կրնայի՞նք տարբեր մտածում ու խորհրդածութիւն ունենալ։ Ո՛չ անշուշտ։

Եւ սակայն ահա մտերմական – ընկերական նամակ մը, որուն բովանդակութեան մասին որեւէ դոյզն կասկած կամ գիտաւորութիւն չէի կրնար ունենալ, քանի որ թղթակիցսարժանահաւատ մէկն է, ժամանակակից գրող մը, վաստակաւոր մը։ Քանի մը պարբերութիւն ալ այդ նամակէն վկայութեան պիտի կանչեմ, առանց խորհրդածութեան ։

— « Կրնամ ըսել թէ ժամանակները տխուր են։ Մտաւորական եւ գրական ճիգերը հետզհետէ կը մարին։ Ընթերցման պակասը սոսկալի թշնամին է այսօր հայ գրականութեան ։ Անշուշտ քարոզով մարդիկ գիրք պիտի չկարդան։ Նոր եկող սերունդն է որ հայերէն չի գիտեր եւ չի կարդար։ Հիները կարդացին, յոգնեցան եւ հիմա հազիւ կը կարդան։ Եւ հինը կը մեռնի ու պիտի մեռնի։ Նոր եկողներուն մենք մանկապարտէզէն սկսած պատկեր , գիրք եւ գրքոյկ պիտի տայինք, պէտք է տանք որ անոնք կարդալը սիրեն եւ երբ մեծնան՝ կարդան նաեւ գրականութիւն։

« Մեր ճիգերը շատ քիչ արդիւնք կու տան. մեր լուսաւոր գաղութները իրենց գրական եւ մտաւորական կեանքով՝ պըլպլացող մոմերու կը նմանին, մարելու վրայ են։ Փարիզը աչքիդ առաջն է. բաղդատէ 20–25 տարի առաջուան կեանքին հետ։ Ո՞ւր պիտի հասնինք։ Ի՞նչ կրնանք ընել գաղութէ գաղութ՝ կլանող ալիքներուն դիմադրաւելու համար»։

Ըսի արդէն թէ որեւէ կասկած կամ թերահաւատութիւն չունիմ ընկերոջ մը կողմէ սրտցաւօրէն գրուած տողերու համար։ Հիմա կ'անդրադառնամ քանի մը պարբերականներուն կրած նիւթական դժուարութիւններուն։ Գիտենք որ Լիբանանի եւ Սուրիոյ մէջ հարիւր յիսունէն մինչեւ երկու հարիւր հազարի հասնող հայութիւն մը ունինք, բազմաթիւ դպրոցներով, մէկէ աւելի երկրորդական վարժարաններով։ Եւ սակայն հոն լոյս տեսնող պարբերականները ոչ մէկ ատեն ինքնապահ են եւ իրենց սպառումը հազիւ 500 օրինակի կը հասնի։ Կը գնահատենք բոլոր թափուած ճիգերը եւ իմացական – բարոյական զոհողութիւնները։ Բայց ո՞ւր է վաւերականութիւնը, բարոյական, նաեւ նիւթական վարձատրութիւնը , որուն իրաւունքն ունին մշակոյթի մեր առաքեալները ։

Այս պահուս մեր լաւատեսութիւնը, մեր հպարտութիւնը վիրաւորուած կը զգանք։ Արդա՞ր է որ մեր յուսախաբութիւնը արձանագրենք։ Ո՞վ պիտի գայ , եւ ի՞նչ փաստով ու վկայութիւնով, մեզ մխիթարելու, թէ հայութիւն մը կ'ապրի արեւելեան երկիրներուն մէջ, որուն սիրտը կը բաբախէ մեր մշակութային արժէքներուն, մեր գրին ու գրականութեան, մեր արուեստներուն համար։

Արդեօք օր մը պիտի կրնա՞նք կրկնել մեծ բանաստեղծ Դանիէլ Վարուժանի խօսքը.—

Ու ես կ'երթամ դէպի աղբիւրը լոյսին։

ՄԿՐՏԻՉ ՊԱՐՍԱՄԵԱՆ

# ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ

(Ամփոփուած էջմիածին ամսագրէն)

●

Ես ի՞նչ գիտնայի թէ ճեմարանին մէջ հետս վէգ ու ճիւնագնդակ խաղացող Սողոմոնը՝ Կոմիտաս անունով մեծ երգահան պիտի դառնար ու հռչակ վայելէր ։ Եթէ գուշակէի, եթէ իմանայի, այն ատենէն կ'ուսումնասիրէի անոր նիստ ու կացը, բնաւորութեան գծերը, անոր ամբողջ էութիւնը ։

Երբ Ախալցխացի աշակերտներս 1884–ին էջմիածին գացինք եւ ընդունուեցանք, ճեմարան, միասին դասընկեր եղանք Սողոմոնին հետ եւ իմացանք յատկապէս որ ան ալ նոյն տարին Ժառանգաւորաց դըպրոցէն փոխադրուած է ճեմարան ։

Ճեմարանի երկրորդ դասարանին մէջ մեր երգեցողութեան ուսուցիչը Սահակ սարկաւագ Ամատունին էր։ Ան ալ Օշական գիւղէն էր, եւ Նիկողայոս Թաշճեանին աշակերտած, ըլլալով Մակար Եկմալեանի դասակիցը։

Ամատունին հմուտ էր հայկական ձայնագրութեան մէջ, եկեղեցական շարականներու Պոլսոյ եղանակներուն, բայց ինքը մեզ դաս տուած ատեն կը նախընտրէր էջմիածնի եղանակները, այդտեղէն ալ իրեն դասանիւթ էր ընտրած։ Իր սորվեցուցած երգերը, մեծ մասամբ գրաբար էին եւ կամ միջնադարեան — աշուղական հայերէնով։ Սահակ սարկաւագի ձայնը մեղմ էր եւ դուրեկան, խօսակցութիւնը յած ու համեստ։ Սողոմոնը անոր բոլոր ձեւերը կ'ընդօրինակէր, սորվեցուցած երգերը անգիր կ'ընէր։ Ատոնք էին, «Երկինք զուարթ ակնարկէր», «Ես յարկս պերճ», «Ահա աշնան առաւօտ», «Ի կանխադէտ տեսչութենէդ», «էյ իմ վարդիկ» եւայլն, կամ Գամառ Քաթիպայի երգերը.— « Թող փչէ քամին պաղ – պաղ»,

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (37)

# ՍՊԱՆՆՈՒԱԾ ԱՂԱՒՆԻՆ

●

## ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

### Թ.

Իսկ աչնան կարճատեւ օրն արդէն մթնում էր, եւ ես վերջ ի վերջոյ ստիպուած եղայ որոնումներս դադարեցնել, որպէս զի գնայի Սառայի մօտ ։

Զիմացայ ինչպէս ճաչեցի, որովհետեւ ինձ չափազանց անհանգստացնում եւ, միեւնոյն ժամանակ, հետաքրքրում էր այն տեսակցութիւնը, որ պիտի ունենայի Սառայի հետ։ Զգիտէի, թէ ինչ անուն պիտի տայի այդ տեսակցութեանը, ինչով պիտի արդարացնէի միջամտութիւնս, ինչ պիտի ասէի, ինչպէս պիտի «հանգստացնէի» Սառային ,եւ որքան աչխատեցի պատճառաբանութիւնների մի նախագիծ կազմել ինձ համար, որպէսզի ըստ այնմ էլ չարժուէի, ոչինչ դուրս չեկաւ։ Վերջ ի վերջոյ յիչեցի, որ այդպիսի դէպքերում առհասարակ նախապատրաստումը միանգամայն աւելորդ է հանդիսանում, որովհետեւ երբեք չի արդարանում, եւ ամէն բան պէտք է գցել հանգամանքների բերմունքին ու րոպէի թելադրանքին ։

Այդպէս էլ վճռեցի ու գնացի ։

Փողոցի դուռը բաց արեց ինքը Գարեգինը, որին դրան ապակու միջից տեսայ վերեւի մարմարի սանդուխքով արագօրէն իջնելիս ։

— Շնորհակալ եմ, որ եկար, , անհամբեր սպասում էի, ասաց կամաց, ձեռքս պինդ սեղմելով։ Եկ գնանք։ Բայց ոչ , սպասիր։

Ձեռքս բռնած, պահեց ինձ, մի անհանգիստ հայեացք գցեց վերեւ, դէպի սանդուխքի գլուխը երրորդ յարկում, եւ նորից դառնալով ինձ հարցրեց աւելի կամաց.

— Իսկ այն պարոնին արդէն ճանապարհ դրի՞ր։

— Շատ ման եկայ, չգտայ։ Բայց սովորաբար ինձ մօտ է գիչերում այս երեկոյ որ վաղ գայ, կը ճանապարհեմ հէնց այս գիչերուայ գնացքով ,հակառակ դէպքում բանը կը մնայ վաղուան ։

— Այդ վնաս չունի, միայն թէ, աղաչում եմ, Սառային ասա, որ այլեւս այստեղ չէ, գնացել է, որովհետեւ վախենում եմ, որ այս գիչեր էլ ստիպի, որ գնամ սպանենմ։ Եւ, բացի դրանից, որ իմանայ թէ նա այլեւս այստեղ չէ, կը հանգստանայ ։

— Դու կարծո՞ւմ ես ։

— Անպատճառ ։

Սկսեցինք բարձրանալ սանդուխքով։ Բայց այս անգամ, իմ հերթին, ես կանգնեցրի նրան։

— Չլինի՞ թէ Սառային յայտնել ես մեր այսօրուայ տեսակցութիւնը, ասացի։

— Ոչ, ոչ, ի՞նչ ես ասում, շշնջաց Գարեգինը, ըստ երեւոյթին, զարմացած, որ ես կարող էի այդպիսի կասկած տանել։ Այդ աստիճան հօ դեռ չեմ կորցրել խելքս։ Նա ինձ տեսնել էլ չի ուզում. փակուել է իր սենեակում եւ չի ուզում դուրս գալ։

Այս անգամ ես արդէն վճռականապէս կանգ առայ։

— Ոչ, ոչ, քեզ կ'ընդունի, կ'ընդունի ։ Այդ ինձ է որ չի ուզում տեսնել։ Քեզ կ'ընդունի հէնց միայն այն պատճառով, որ այն պարոնը քեզ մօտ հիւր է։ Եկ ,եկ գնանք։

Ու, ձեռքս բաց չթողնելով, դրեթէ զոռով տարաւ ինձ վերեւ։

Մտանք նախասենեակը, որը լուսաւորուած էր ելեկտրական ճրագով։ Մինչդեռ ես հանում էի վերարկուս, Գարեգինը չատ զգուչօրէն բաց արաւ ելեքտրական ջահի կոճակը, որից հիւրասենեակը յանկարծ լուսաւորուեց կապտաւուն պայծառ լոյսով, նոյն զգուչութեամբ դուրս եկաւ եւ դարձաւ ինձ շշնջալով.

— Դու մտիր, իսկ ես իսկոյն աղախինի բերնով կ'ապսպրեմ Սառային, որ եկել ես տեսնելու։

— Իսկ դո՞ւ։

— Իսկ ես չեմ երեւայ, որպէսզի հրգրգռուի, եւ հանգիստ խօսէք։

Եւ Գարեգինը զգոյշ ու արագ չքացաւ մի ուրիշ դրան ետեւը, որ նոյն նախասենեակից տանում էր դէպի ներքին սենեակները։

Մտայ հիւրասենեակ եւ նստեցի։ Այդտեղ, բացի մուտքը եւ դէպի ինձ ծանօթ պատշգամը տանող դռներից, կար ուրիշ երկու դուռ։ Փոխեփոխ նայում էի մերթ այս, մերթ այն դրան, սրտիս մէջ զգալով մի տարօրինակ վախ եւ րոպէ առ րոպէ սպասելով, թէ ահա որտեղ որ է՝ կը մտնի Սառան իր անհամբոյր յամառ հայեացքը տարակուսօրէն աչքերիս յառած ։ Ու նոր զգացի, թէ որքան մեծ անմտութիւն էի գործել, յանձն առնելով մի առաքելութիւն, որ մի կատարեալ անյաջողութիւն լինելով հանդերձ՝ յղի էր ինքնասիրութեանս համար չատ անախորժութիւններով, եւ որի տակ այժմ աւելի քան մինչեւ գալս, զգում էի, թէ պիտի ճըմլուիմ։

ՆԱՐԴՈՍ

( Շար. )

